

Այսօր Հինգշաբթի, 1 Նոյ. (Toussaint) կէսօրէ վերջ ժամը 3.30ին

Salle GAVEAUի մէջ, 45, Rue la Bôetie

Métro: MIROMESNIL

Տեղի կ'ունենայ ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆի Ղեկավարութեամբ

ՍԵՆՖՕՆԻՔ ՄԵԾ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳԻՆԵՐՈՎ

Կը մասնակցի Օր. ԼԻՏԻ ՏԷՄԻՐՃԵԱՆ եւ 50 հոգինոց ՍԵՆՖՕՆԻՔ նուագախումբ

Յայտագիր. — Ա. մաս՝ Դասական Երաժշտութիւն (Պէխ, Շօփէն եւ Վէպէր):

Բ. մաս՝ ՊԱՐԹԵՒԵԱՆի գործեր:

Իբր առաջին ունկնդրութիւն.— «Գեղջկական շարք» երեք բաժանումներով:

ա) Արշալոյսէն մինչեւ կէս օր.— բ) Հովիւներ՝ լերան վրայ.— գ) Գեղջկական խրախճանք:

ԳԻՆԵՐ՝ ԲԱՑԱՌԱԲԱՐ 20, 15, 10, 8, 7 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

Հանդէսը կը վերջանայ ժամը 6.30ին: Նուագման պահուն սրահին դռները փակ կը մնան:

---

արտասահմանի յարակից գաղթի ոտնկանութիւնը: 1905ին էր որ, Փեթերսպուրկի մէջ, առաջին անգամ տեսաւ այդ ուխտին ռուսերէն օրինակը: Իր կարծիքով, բոլորն ալ կեղծ են, չինուած՝ Զար. Թախտակկի կողմէ որ հեղինակն է բազմաթիւ կեղծարարութեանց եւ որուն գործակցած է գաղտնի գործակալ մը, Կոլոմինսկի: Վկայութեան կանչուած էին նաեւ հռչակաւոր Գուրցեւը, որ մէջտեղ հանեց Ազէվի գաղտնիքները, Պ. Միլիւկով եւն.:

— • —

16.500.000 ԳՈՐԾԱԶՈՒՐԿՆԵՐՈՒ աշխատանք ճարելու համար, հնգամեայ ծրագիր մը ներկայացուեցաւ նախագահ Րուզվէլթի, հանրօգուտ շինութեանց նախարարութեան կողմէ: Ծրագրին գործադրութեան համար կը պահանջուի 12 միլիառ տոլար: Այս գումարին 7 միլիառը պիտի գործածուի հանրօգուտ շինութեանց, մնացեալ հինգ միլիառը՝ տուներու կառուցման:

ՀԻՆԳ ՖՐԱՆՔՆՈՑ նոր դրամները, որոնք առժամեայ հինգնոցներուն տեղը պիտի բռնեն, շրջաբերութեան պիտի հանուին նոյ. 3էն սկսեալ: Գլխաւոր յատկանիշներն են՝ բաղադրութիւն՝ զուտ նիքէլ, ծանրութիւն՝ 12 կրամ, տրամագիծ՝ 31 միլիմէթր: Առժամեայ հինգնոցներն ալ պիտի գործածուին ցնոր տնօրինութիւն:

ՍԹԱՎԻՍԿԻԻ քննիչ յանձնաժողովը առջի օր լսեց Վոլոնթէյի տնօրէնը, Տիսպառի, որ բանտարկուած կը մնայ 9 ամիսէ ի վեր: Որ եւ է նոր յայտնութիւն չըրաւ ամբաստանեալը, պնդելով թէ գործած է բարեմտութեամբ եւ որ եւ է անձնական շահ չէ ունեցած իր կատարած բարեխօսութիւններէն:

ԳՆՋՈՒՆԵՐԸ վերընտրեցին իրենց թագաւորը, Միքայէլ Բ. Ֆվայզ Վարշաւայի մէջ, հինգ տարուան համար: Կ'ըսուի թէ գնչուներու թագաւորութիւն մը պիտի հաստատէ ... Հնդկաստանի մէջ:

ՀԻԹԼԷՐ ունկնդրութեան ընդունեցաւ բողոքող եպիսկոպոսները եւ լսեց անոնց արտունջները: Կը կարծուի թէ ելք մը պիտի գտնէ, որպէսզի Եկեղեցին փրկուի տհաճ պառակտումէ մը:

---

Դ. Վ. ԵԱՐՃԱՆԵԱՆ կը ծանուցանէ թէ իր թէլէֆօնին թիւը փոխուած է եւ եղած **PROVENCE 78-38**:










Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (12e)

Le Gérant: H. STEPHAN










## Հ. Յ. Դ.

*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՕՅԻ Զաւարեան կոմիտէի ընդհանուր ընկերական ժողովը վաղը շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, Ակումբին մէջ:*

*Հրազդան խումբի ժողովը այս Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին 32, Ավընիւ Կօպլէնի սրճարանին մէջ:*

*ԹԷԼՎԻԼԻ ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը այս Երկուշաբթի երեկոյ ժամը 9ին 131, Fbg. du Temple:*

*ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատանեկան Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Դրազարանի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:*

×

### Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍ. ԺՈՂՈՎՆԵՐԸ

*«Վռամեան» ենթակոմիտէի ժողովը, այս կիրակի կէսօրէ վերջ:*

*« Ասօ » խումբի ժողովը, այս կիրակի առաւօտ, ժամը 9ին:*

*« Վարանդեան » խումբի դաս. ժողովը 5 Նոյեմբեր երկուշաբթի երեկոյ ժամը 8ին:*

---

### *ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ*

Հ. Յ. Դ. ԸՆԿԵՐ ԿԱՐՕ ԵՆԹԱԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ

Վաղը Շաբաթ երեկոյ, ժամը 7ին, Սէնթ – Անթուանի « Պառ Թէրմինիւս »ի մէջ:

*Կը խօսին՝ ընկերներ* Ա. ԱՐԾՐՈՒՆԻ, Պ. ՀԻՒՍԵԱՆ *եւ* ԱԶԳԻՆ

---

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

*Կազմակերպուած Ֆր. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղին կողմէ*

*Այս կիրակի, ժամը 3ին ՖԼՕՐԻԱ ճաշարանին մէջ*

Կը նախագահէ՝ ՏԻԿ. ՏԻՐՈՒՀԻ ՄԻՍԱՔԵԱՆ

Կը խօսի՝ ՏԻԿ. ՊԵՐՃՈՒՀԻ ԲԱՐՍԵՂԵԱՆ

*Նիւթ՝ ի՞նչ գտանք եւ ի՞նչ կորսնցուցինք Ֆրանսայի մէջ:*

*Դասախօսութենէն վերջ վիճաբանութիւն:*

Մուտքը ազատ է. Թէյասեղանի ծախսերուն համար կը գանձուի 3 ֆրանք:

*Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:*

---

### *ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ*

ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ՍԵՎՐԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ

Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3·30ին

Salle Marronnièreի մէջ 28 Ave. Livry, Սեվրան:

Կը նախագահէ՝ ՏՕՔԹ. ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻ

Կը խօսի՝ Պ. Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ

Գեղարուեստական բաժին՝ մասնակցութեամբ ԿՈՄԻՏԱՍ երգչախումբի, ղեկավարութեամբ Պ. Ն. ՍԵՐԳՈՅԵԱՆի եւ սիրայօժար մասնակցութեամբ Օր. ԱՆԺԷԼի (դաշնակ):

Նախքերու մասնակցութեան համար 3 ֆրանք:

*Հաղորդկ. միջոց.*— կար տիւ Նորէն շոգեկառք ժամը 2.35 եւ 2.45: Օթօպիւս՝ մէթրօ ժան ժօռէսի հրապարակէն:

---

### *ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ*

ԿԸ ՏՕՆՈՒԻ ՇԱՎԻԼԻ ՀԱՄԱԶԳԱՅԻՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

Վաղը Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին Մատուռ – մանկապարտէզի սրահին մէջ:

Կը նախագահէ՝ Պ. Ռ. ԲԵՐԲԵՐԵԱՆ

Կը խօսի՝ Պ. Ս. ՍԱՍՈՒՆԻ

Երգ եւ արտասանութիւն — Մուտք 2 ֆրանք

---

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած

ԴՊՐՈՑԱՍԷՐ ԱՆԿԷՆԻ ՕԺԱՆԴԱԿ ՕՐԻՈՐԴՆԵՐՈՒ ԿՈՂՄԷ

*Տեղի կ'ունենայ ՇԱԲԱԹ* 17 *ՆՈՅԵՄԲԵՐ*

*երեկոյեան ժամը* 10էն *մինչեւ առաւօտ*

**SALLE HOCHE**ի ընդարձակ սրահներուն մէջ **9 Avenue Hoche**

*Կը մասնակցին ամենայայտնի ծանօթ արուեստագէտներ*

Հեռաւորները անակնկալներ: — Դին 15 ֆրանք:

*Կարելի է նախօրօք տեղամասեր վարձել* — *Հեռախօսել՝* Prov. 95.61 եւ 34-61

---







### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Փարիզի Հայ Ուսանողական Միութեան ժողովը այս կիրակի ժամը 10·30ին:*

Cité Universitaire, *Մաքի Նուպար հաստատութեան մէջ,* 57 Bd. Jourdan *Փարիզ* (14):

*Օրակարգ. Ընդհանուր տեղեկատուութիւններ, կանոնագրի փոփոխութիւն եւ վարչութեան ընտրութիւն: Կը հրաւիրուին Փարիզի բոլոր հայ ուսանողները:*

*Ֆր. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 4ին մանկապարտէզի սրահին մէջ: Կը հրաւիրուին անդամուհիներն ու համակիրները:*

*ՍԱՍՆԱՅ ՁՈՐԻ Հայրենակցական Միութեան Փարիզի վարչութիւնը ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 2ին, 13, Րիւ Փիէռ Բիւրէ, Բըլվիլ – Պիւիւիւ Մէթրօ Փորթ տ'Իթալի:*











Imprimerie A. DER (AGOPIAN) — 17, Rue Damesme, PARIS (13e)

Le Gérant: H. STEPHAN

կողմէ Ազգերու Դաշնակցութեան ուղղուած տեղեկագիր մը, որ յայտնութիւններ կը պարունակէ «Գերմանական Ճակատ»ի գործունէութեան մասին: Տեղեկագիրը կ'ըսէ թէ այս կազմակերպութիւնը մէկ շառաւիղն է հիթլէրական կուսակցութեան եւ պարզապէս գերմանական կառավարութեան ծրագիրն է որ կը հետապնդէ, ջանալով իր ազդեցութեան տակ առնել Սարի յետին բնակիչը եւ այդ հողամասը կցել Գերմանիոյ: Իրենց նպատակին հասնելու համար, Գերմանական Ճակատը շարժման մէջ դրած է բոլոր արդիական միջոցները — ռատիօ, շարժանկար, մարզանք, գրօսարշաւ եւն.: Տեղեկագրին համաձայն, սպառնալիքներ ալ պակաս չեն:

## Եուկոսլաւիա պիտի ամբաստանէ Հունգարիան

Ժընեւէն կը հեռագրեն թէ՝ լուրի մը համաձայն, Եուկոսլաւիոյ կառավարութիւնը Աղեքսանդր Թագաւորին սպանութեան պատասխանատու պիտի հռչակէ հունգարական կառավարութիւնը, համաձայն Ազգերու Դաշնակցութեան ուխտի 11րդ յօդուածի Բ. հատուածին: Տրուած լուրին համաձայն, խնդիրը Ազգերու Դաշնակցութեան խորհուրդին պիտի ներկայացուի Նոյեմբեր 20ին: Գլխաւոր մեղադրանքը այն է թէ Հունգարիա թոյլ տուած է որ գաւազրութիւններ սարքուին իր հողին վրայ: Ազգերու Դաշնակցութեան վերաբերեալ յուշագրին մէջ կ'ըսէ — «Ազգերու Դաշնակցութեան իւրաքանչիւր անդամի բարեկամական պարտականութիւնն է Ընդհ. Ժողովի կամ խորհուրդի ուշադրութեան յանձնել որ եւ է պարագայ որ կրնայ ունի միջազգային յարաբերութեանց հետ եւ կը սպառնայ միջազգային խաղաղութեան կամ ազգերու բարւոք յարաբերութեանց»: Բողոքը պիտի ներկայացուի միայն Եուկոսլաւիոյ կողմէ, անոր ուղղակի ու՛ չպիտի տան ոչ Փոքր Համաձայնութիւնը, ոչ ալ պալքանեան միութիւնը, որոնց երկուքին ալ անդամ է Եուկոսլաւիա:

Պուլկարական ոստիկանութիւնը Պելկրատ ղրկեց Աղեքսանդր Թագաւորի ահաբեկիչին վերաբերեալ բոլոր փաստաթուղթերը: Հաստատուած է թէ ահաբեկիչին բուն անունը ոչ Քէլեմէն է, ոչ ալ Վլատիմիր Չէրնոզէնսքի, այլ Վէլիչքօ Տիմիթրի Քէրին, ծնած 1897ին եւ անդամ Մակեդոնական կազմակերպութեան: Հայրը, քոյրերը եւ եղբայրները կը գտնուին Պուլկարիա: Ահաբեկիչը երկու անգամ դատապարտուած է, իսկ 1928ին մահուան դատապարտուած՝ իբրեւ սպանիչը երեսփոխան Տիմովի: Անգամ մը ներում ստանալով, 1931ին ցկեանս բանտարկութեան դատապարտուեցաւ օրագրող Թոմալիվչի սպանութեան համար: Նորէն ներում ստացաւ, 1932 յունուարին, եւ մէկ ամիս յետոյ Հունգարիա ղրկուեցաւ Մակեդոնական կազմակերպութեան կողմէ, իբրեւ մարզիչ խրուած յեղափոխականներուն:

### ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆԸ ՆՈՐԷՆ ԱՒԵԼՑԱԾ

Աշխատանքի նախարարութեան վերջին տեղեկագրին համաձայն, նոյ. 3ին նպաստընկալ գործազուրկներու թիւն էր 347,804, որոնց 275,118ը այր եւ 72,686ը կին: Անցեալ շաբթուան վրայ աւելցած են 3821 հոգի, իսկ անցեալ տարուան նոյն շաբթուան վրայ՝ 110,233 հոգի:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

**Փարիզ**

**ՓԱՐԻԶԻ** Հրազդան, Քրիստափոր եւ Ազբիւր – Սերոբ խումբի ընկերները ընդհանուր ժողովի կը հրաւիրուին, յառաջիկայ չորեքշաբթի իրիկուն, ժամը 8.30ին, 32, Ave. des Gobelinsի սրճարանը: Կարեւոր օրակարգ:

**ԱՐԱՄ** Ենթակոմիտէի ընկերական ժողովը վաղը երկուշաբթի երեկոյ ժամը 9ին սովորական հաւաքատեղին:



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

**ԽՈՋԿԱՏԻ** եւ շրջականներու Հայր. Միութեան Փարիզի վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ բոլոր հայրենակիցները, այսօր կիրակի, ժամը 2ին, 131, Fbg. du Temple: Կարեւոր օրակարգ:



Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13e)

**2,226** վերջացող թիւերը շահած են **50,000** փրանք:
7,724 վերջացող թիւերը շահած են 25,000 փրանք:
**2,015** վերջացող թիւերը շահած են **25,000** փրանք:
**915** վերջացող թիւերը շահած են **10,000** փրանք:
**42** վերջացող թիւերը շահած են **1000** փրանք:
0 վերջացող թիւերը շահած են **100** փրանք:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ՓԵՆԺԻՈՆ* դահլիճին տագնապը կ'երկարաձգուի, քաղաքական եւ տնտեսական պատճառներով: Նոր դահլիճին կազմութիւնը յանձնուեցաւ Գ. Ժաւփոտի:

*Խ. ՄԻՈՒԹԵԱՆ ԵՒ ՖՐԱՆՍԱՅԻ ՄԻՋԵՒ* առեւտրական դաշնագիր մը կնքելու համար, Մոսկուա պիտի երթայ առեւտրական նախարարը, Գ. Մառշանտօ, դեկտեմբերի սկիզբը: Հրաւէրը Մոսկուայէն եկած է:

*ՁԻՆԱԴԱԴԱՐԻ ԱՌԹԻՒ*, միայն Ֆրանսայի անթիլի հայաններէ չէին հաղորդած արարողութեանց մանրամասնութիւնները: Թղթատարական նախարարը պատժեց պատասխանատու պաշտօնեան:

*ՆՈՐ ԳԱՑԹԱԿՂՈՒԹԻՒՆ ՄԸ ԵՐԵՒԱՆ* հանուած էր Ռուանի մէջ, ինչպէս գրած էինք: Ամբաստանեալներու թիւը արդէն հասած է 11ի, մէջն ըլլալով գեղծումները մատնանշողը:

*ՆԱՓՈԼԷՈՆԻ* 276 նամակները աճուրդով ծախու հանուեցան առջի օր :Վելթին պահուն, 100 հատը վար դրուեցան, ազգ. դիւանաթուղթերու վարչութեան պահանջին վրայ: Մնացեալը ծախուեցաւ 150.000 փրանքի: Ամէնէն բարձր գինը, 43,000 փրանք, տրուեցաւ սիրահարական նամակի մը որ ուղղուած է Ժոզէֆինի: 21,000 փր.ի ծախուեցաւ ստորագրութիւն մը, երբ Նափոլէոն 16 տարեկան էր: Ժոզէֆինի մէկ նամակը՝ երկու էջ՝ ծախուեցաւ 5100 փրանքի եւայլն:

*ՕԴԱՆԱՒԱՅԻՆ* 14րդ ցուցահանդէսը կը բացուի այսօր, ուրբաթ, Կռան Փալէի մէջ, հովանաւորութեամբ հանրապետութեան նախագահին:

*ԱՆԳԼԻՈՅ* երեսփ. ժողովին մէջ, լորտ Կեմպսըն Իտըն պատասխանելով հարցումի մը, յայտարարեց թէ պարզապէս բարեկամական խօսակցութիւն մը ունեցած, ինք եւ արտաքին նախարարը, Հիթլէրի մտերիմ գործակալին՝ Ռիպէնթրոփի հետ: «Ոչ քաղաքական, ոչ ալ սպառազինութեան խնդիր յուզուեցաւ»:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

*ԱՐԾՒԻ ենթակոմիտէութեան դասախօսական ժողովը տեղի կ'ունենայ 17 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը ճիշդ 9ին Թաշեանի սովորական հաւաքատեղին:*

*ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ «Մլէօ» խումբի բոլոր ընկերները այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին Ակումբին մէջ:*

*ՇԱՒԻԼԻ Արզումեան խումբի ժողովը նոյեմբեր 17, Շաբաթ երեկոյ ժամը 9ին, ընկ. Կղեմէս Մկրտիչեանի բնակարանին մէջ:*

### Գաւառ

*ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն վիճաբանական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 16 նոյեմբեր, ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին,* 181, Cours Lafayette, *«Զարդարեան» Գրադարանը: Նիւթ՝* Ինչու Դաշնակցական եղանք:

*ՌՕՄԱՆԻ Անդրանիկ խումբի դասախօսական ժողովը 16 նոյեմբեր, Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին, ընկերվարականներու սրահին մէջ: Կը խօսի՝ ընկ. Ա. ՊՕՅԱՃԵԱՆ: Կը հրաւիրուին համակիրները:*

*ՄԱՐՍԷՅԼԻ «Իշխան» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը 18 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 4ին, սովորական հաւաքատեղին: Օրակարգ՝ շարունակութիւն նախորդ ժողովի:*

*Հ. Յ. Դ. Վալանսի Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սէնթ-Ժիւլիէի Վրէժ խումբը եւ Փրիվայի ու շրջանի բոլոր ընկերները, 18 նոյեմբեր կիրակի կէս օրէ վերջ ժամը ճիշդ 2ին, Սէն Ժիւլէի մէջ: Ներկայ կ'ըլլայ Կոմիտէի ներկայացուցիչը:*



## ՆՈՒԻՐԱՏՈՒԻՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*ՎԱԼԱՆՍ, Գործ.*— 337 *Ֆրանք:* *Կարգադրեցինք.*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*ՓԱՐԻԶԻ Տիգրանակերտի եւ շրջանի Հայր. Միութեան տեղական ընդհ. ժողովը, այս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3.30ին,* 32 Ave. des Gobelins, *մէթրօ՝ Կօպըլէն, կը հրաւիրուին նոյն հայրենակիցները: Օրակարգ՝ շրջանային ժողովի օրակարգի քննութիւն եւ պատգամաւորներու ընտրութիւն:*

*ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ*

*17 նոյեմբեր, Շաբաթ երեկոյ ժամը 8ին Սէն Թ'էթիէնի Դուրեան Գրադարանին մէջ, կը խօսի՝* Հայր Աբիս Վարդանեան, *նիւթ՝ Հայ լեզուի ծագումն ու զարգացումը:*

*Կը հրաւիրուի գաղութին հայութիւնը:*




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13e)

թիւը ունի 3500 — 4000 քաշքավարժ մեքենավարներ, բազմաթիւ ընտիր օդանաւերով: Ցետոյ մանրամասն տեղեկութիւններ կուտայ սպառազինութեանց մասին: Քրուփի զինագործարանը կ'արտադրէ ծանր եւ թեթեւ թնդանօթներու չինութիւնը, կ'ուսումնասիրէ հեռաձիգ թնդանօթներ եւ հզօր հրասանդեր: Վառօդի գործարանն ալ կ'աւելցնէ արտադրութիւնը: «Քանի մը ամիս ալ, եւ Գերմանիա աւելի զօրաւոր պիտի ըլլայ քան 1914ին, կ'եզրակացնէ տեղեկագիրը: Շատ հեռու ենք Վերսայլի դաշնագրէն: Ֆրանսայի հակառակորդները պատերազմի կը պատրաստուին ուժգին թափով, երբեւ թէ շատ մօտ ըլլար: Ֆրանսայի համար հզօր եւ լաւ սպառազինուած բանակ մը պահելով միայն կարելի է յուսալ թէ խաղաղութիւնը չպիտի վտանգուի »:

## Ազգերու Դաշնակցութեան Ժողովներ

### ՕՐԱԿԱՐԳԻՆ ՄԷՋ ԿԸ ԳՏՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ԴԷՊՔԸ

Ուշադրութիւնը վերսկսաւ Ժընեւի մէջ, շնորհիւ Ազգերու Դաշնակցութեան ժողովներուն որ կը բացուին այս շաբթու: Զինաթափութեան խորհրդաժողովին գիւանը կը գումարուի այսօր, իսկ Ա. Դ. խորհուրդին ժողովը՝ հաւանաբար շաբաթ օր: Այս վերջինը իր օրակարգին վրայ ունի երկու կարեւոր խնդիրներ,— Սարի հանրաքուէն եւ Մարսէյլի դէպքը: Ռումանիոյ, Եուկոսլավիոյ եւ Չեխոսլովաքիոյ արտաքին նախարարները, որոնք Փոքր Համաձայնութեան մնայուն խորհուրդը կը ներկայացնեն, խորհրդակցութիւն մը կատարեցին Եուկոսլավիոյ պատրաստած յուշագրի մասին: Եուկոսլավիոյ կառավարութիւնը որոշած է արդարութիւն առնել: Այս ձեռնարկին մէջ իրեն ուժ կուտան ոչ միայն Ռումանիա եւ Չեխոսլովաքիա, այլ եւ Ֆրանսա, Թուրքիա եւ ուրիշ երկիրներ: Կ'ըսուի թէ Եուկոսլավիոյ արտաքին նախարարը Ազգերու Դաշնակցութեան պիտի յանձնէ կարգ մը փաստաթուղթեր, ապացուցանելու համար թէ Հունգարիա մասամբ պատասխանատու է Մարսէյլի դէպքէն յառաջ Եուկոսլավիոյ մէջ կատարուած մահափորձերուն, քանի որ ապաստան տուած է օտար ահաբեկիչներու, հակառակ եղած բողոքներուն:

## «Թայմզ» կը պահանջէ ոչնչացնել ահաբեկիչները

«Թայմզ» խմբագրականի մը մէջ արդարացի գտնելով հանդերձ Եուկոսլավիոյ տեսակէտը, դիտել կուտայ թէ օրուան այս ժամուն այդպիսի խնդիր մը դնել Ազգերու Դաշնակցութեան սեղանին վրայ՝ պիտի ծառայէ պղտորելու ազգերու յարաբերութիւնները, մանաւանդ որ Եուկոսլավիա ամէնէն աւելի կը պնդէ իրեն յանձնել Փավէլիչը, որ Իտալիոյ մէջ ձերբակալուեցաւ մէկ ամիս առաջ: Այս վերապահումէն դուրս, «Թայմզ» համաձայն է որ հաւաքաբար միջոցներ ձեռք առնուին, «վերջնապէս ոչնչացնելու համար այն ահաբեկիչները որ ուրիշ երկիր կ'ապաստանին: Ահաբեկչական կազմակերպութիւնները սպառնալիք մըն են եւրոպական համերաշխութեան համար: Անթոյլատրելի են անոնց մեթոտները: Բացարձակապէս արդար է որ միջազգային ձեռնարկ մը կատարուի անոնց դէմ: Ինչպէս պատերազմը, ոճիրն ալ չի կրնար թոյլատրուիլ երբեւ միջոց քաղաքականութեան: Խնդիրը միջազգային է եւ պէտք է լուծուի միջազգային միջոցներով: Եթէ ձգուի որ կառավարութիւնները անհատապէս կարգադրեն այս անախորժ խնդիրները, հետեւանքները շատ ծանր կրնան ըլլալ: Բոլոր կառավարութիւնները կրնան հաւասարապէս թշնամիներ համարել քաղաքական մարդասպանները»:

## Երկրաշարժ Մուշի մէջ

Պոլսէն կը հեռագրեն թէ երկրաշարժի ուժգին ցնցումներ զգացուեցան Մուշի մէջ (որ կը գտնուի Եղեր ... Քիւրտիստան): Ութ հոգի մեռած եւ շատեր վիրաւորուած են: Նիւթական վնասները շատ մեծ են: Իբր 150 տուներ կործանած են:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԻՏԱԼԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ որոշեց մէկ միլիառ լիրի գանձատոմսեր հանել, ելմտացոյցին բացը գոցելու համար: Տոկոսը պիտի ըլլայ 4 առ հարիւր: Հոկտեմբերին ելմտացոյցի բացն էր 715,000,000 լիր: Ելմտացոյցին տարեկան գումարն է 20 միլիառ լիր: Հանրային պարտքը 15 միլիառ կամ 17 առ հարիւր աւելցած է վերջին չորսուկէս տարուան ընթացքին:

ԱՒՍՏՐԻՈՅ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ ապահովելու համար, որոշուեցաւ աւելի զօրացնել Վիէննայի ոստիկանութիւնը եւ առ հասարակ ամբողջ երկրին պաշտպանողական ուժը: Այս որոշումը հետեւանք է Աւստրիոյ վարչապետին Հռոմ այցելութեան: Յառաջիկայ երկու տարիներու ընթացքին, Վիէննայի ոստիկանութիւնը պիտի զօրանայ ամսական յաւելումներով: Այս ամսու ծառայութեան մտան 150 նոր ոստիկաններ, դեկտեմբերին պիտի արձանագրուին 300, յունուարին 300 եւ այսպէս շարունակ:

ԻԲՐԵՒ ԱՀԱԲԵԿԻՉ Նիսի մէջ ձերբակալուեցաւ Չեխ մը, Լատիսլաս Քիս, 40 տարեկան, որ այդ քաղաքը հասած էր հոկտ. 30ին եւ մատնանշուած՝ ոստիկանութեան կողմէ: Սենեակը խուզարկեցին, բայց բան մը չգտան: Հաւանական է որ վտարուի:

ՎՏԱՐՄԱՆ ՎՃԻՌ ստացած ըլլալով, անձնասպան եղաւ Իտալացի բանուոր մը, Լուիճի, Լիոնի շրջանին մէջ: Երկու գնդակ պարպեց գլխուն:

ՍՈՍԻԷԹԷ ՍՓԷՍԻԱԼ ՖԻՆԱՆՍԻԷՌԻ նախկին նախագահը, Շառլ Լէվի եւս ձերբակալուեցաւ 1,300,000 ֆրանք իւրացուցած ըլլալով ընկերութեան տոկոսներէն, խարդախ հաշիւներով: Նախապէս ձերբակալուած էր հօրեղբայրը, Ժոզէֆ Լէվի

45,000 ՎԵՐԵԼԱԿԻ ծառայողներ, գանձապաններ եւ գիշերապահներ կը պատրաստուին գործադուլ հռչակել Նիւ Եորքի մէջ. Կրնան եռեւամեայել 80–100 յարկ բարձրութեամբ շէնքերու բնակիչներուն վիճակը, եթէ որոշումը գործադրուի

ՓՈՂՈՑԱՅԻՆ ՑՈՅՑԵՐՈՒ եւ անհատական զէնքերու վերաբերեալ օրինագիծները ներկայացուեցան Երեսփ. Ժողովին: Կառավարութիւնը կը պահանջէ անյապաղ քուէարկել զանոնք

Մեզի կը հաղորդեն որ հոկտեմբեր 31ին Մանչէսթրի մէջ մեռած է փարիզաբնակ առեւտրական ՊԵՏՐՈՍ ԳԱՎՈՒՔՃԵԱՆ:

Ցուղարկաւորութիւնը տեղի ունեցած է Մանչէսթրի Հայոց եկեղեցիին մէջ եւ հանգուցեալին մարմինը ամփոփուած է տեղւոյն գերեզմանատունը:



## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

ՓԱՐԻԶԻ Հրազդան, Քրիստափոր եւ Աղբիւր – Սերոբ խումբի ընկերները ընդհանուր ժողովի կը հրաւիրուին, այսօր չորեքշաբթի իրիկուն, ժամը 8.30ին, 32, Ave. des Gobelinsի սրճարանը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶԻ եւ շրջանի քոյր կոմիտէներու ընկերահամակրական ընդհ. դասախօսութիւնը տեղի կ'ունենայ 25 նոյեմբեր Կիրակի, կէսօրէ վերջ, ժամը 2ին, Société Savantesի D սրահին մէջ

X

ԼԻՈՆԻ « Վարանդեան » կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 23 նոյեմբեր, Ուրբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Զարդարեան Դրադարանը, 181 Քուր Լաֆայէթ.

ՄԱՐՍԷՅԼԻ « Ռոստոմ » ենթակոմիտէի ընկ. ընդհ. ժողովը 21 նոյեմբեր Չորեքշաբթի երեկոյ, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:























Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameme, PARIS 13e

բողոքութիւնն ։ Երբ միջազգային կացութիւնը խաղաղի, «Կազիթ» պիտի ձեռնարկէ ճամբորդութեանց, առաջին անգամ պաշտօնապէս այցելելով Պելկրատ։ Կ'ըսուի թէ մինչեւ այն պատճառներով յետաձգուած է Ալպանիոյ թագաւորին այցելութիւնը դէպի Էնկիւրի։

## Թուրքիոյ տնտեսական խաղաղականութիւնը

Թուրք թերթերը կը գրեն թէ ներքին գործավարութիւնը մեծ աշխատութեամբ կը շարունակէ բնակչութեան աճումի եւ տեղաւորման քաղաքականութիւնը։ Գործավարութիւնը քաղաքական ձեռնարկներու սկսած է, օտար երկիրներէ Թուրք գաղթականներ փոխադրելու համար։ Կը յուսացուի թէ այս ձեռնարկները նպաստաւոր արդիւնք պիտի ունենան։

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

### Դ Ա Ս Ա Խ Օ Ս Ո Ւ Թ Ի Ւ Ն

ՓԱՐԻԶԻ եւ շրջանի չորս կոմիտէներու ընկերահամախմբական ընդհ. դասախօսութիւնը տեղի կ'ունենայ 25 Նոյեմբեր Կիրակի, կէսօրէ վերջ, ժամը 2ին, Société Savantesի D սրահին մէջ, 8, Rue Danton, Մէթրօ Odéon կամ St. Michel։

Կը խօսին ընկերներ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ «ՌՈՒՍ-ԹՈՒՐՔ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՔՍԱՆԱՄԵԱԿ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ»

»»»··«««

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ «Զաւարեան» կոմիտէի դասախօսութիւնը տեղի կ'ունենայ, 24 Նոյեմբեր, Շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Ակումբին մէջ։ Կը խօսի՝ ԸՆԿ. Ա. ԳԻՒԼԽԱՆԴԱՆԵԱՆ.

ՌՈՍՏՈՄ խումբի ժողովը այս Կիրակի առաւօտ ժամը 9, 139, Fbg. du Temple։ Կարեւոր օրակարգ։

### Գաւառ

ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, 23 Նոյեմբեր, Ուրբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Զարդարեան Գրադարանը, 181 Քուր Լաֆայէթ։

ՎԻԷՆԻ Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ «Մուրատ» խումբի բոլոր ընկերները, այս կիրակի առաւօտ ժամը ճիշտ 2ին «Խամակ» Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ «Անտօք» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը 25 Նոյեմբեր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին «Դաւրեան» Գրադարանի սրահը։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատոմսով։

ՎԱԼԱՆՍԻ Քրիստափոր ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

## [illegible]

ՓԱՆԸԷՕ ՔՈՅՃԱՆԻ «Համազգայինի» ժողովը յետաձգուած է դեկտ. 2ին։

Դր. Կ. ԽԱՉԻ ԽՈՒՄԲԻ մասնաճիւղը կը հրաւիրէ բոլոր անդամները, անդամուհիները եւ համակիր անդամուհիները այս կիրակի կէսօրէ յետոյ ժամը 1.30ին իր Դպրոցի սրահին մէջ խմբանկարուելու համար։

Ցերեկ կ'ունենայ նաեւ ժողով կարեւոր օրակարգով։

### ԳՐԱԿԱՆ ՕՐ

Դեկտեմբեր 29 Շաբաթ երեկոյեան ժամը 9էն մինչեւ առաւօտեան ժամը 5ը երեկոյթ – պարահանդէս կազմակերպուած է Լիոնի Զ. Ռ. Միութեան մասնաճիւղի կողմէ։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։ Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի առնել այդ թուականը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Կը փնտռուի Խարբերդցի Մարիամ [illegible] ելած է Փարիզ եւ ամուսնացած Գ. Մանուկի հետ։ Իր հասցէն իմացնել Յառաջի վարչութեան։

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՌՈՒՍԵՐԷՆ ԼԵԶՈՒՈՎ

23 Նոյեմբեր, Ուրբաթ իրիկուն, ժամը 8.30ին, Société Savantesի սրահին մէջ։ 28, Rue Serpente. Մէթրօ Օտէօն։ Կը խօսի՝ Գ. ՆԱՄԻԹՈՔ, Նիւթ՝ «Կովկասի անուանակոչութեան ծագումը»

### ՄԱՍՆԱՒՈՐ ԴԱՍԵՐ

Հայերէնի, Ֆրանսերէնի, գերմաներէնի եւ անգլիերէնի՝ հմուտ Հայ օրիորդ մը կը ստանձնէ մասնաւոր դասեր տալ, դիւրամատչելի պայմաններով։ Դիմել՝ Երուանդ Յարութիւնեանի, 13, Rue d'Orsel, Paris (18).









## Ի՞նչ կրնայ ընել հայ բանուորը...

«Փոփիւլէռ»ի մէջ կը կարդանք.— Ընկեր Լիւսիէն Հիւռել, քաղաքապետ Վիէնի եւ երեսփոխան Իզէրի, ռուսական դեսպանատան յայտնած էր թէ բաւական թիւով հայ գործաւորներ բանուորներ կ'ուզեն իրենց երկիրը դառնալ որ մաս կը կազմէ Խ. Միութեան: Ընկերը հետեւեալ պատասխանը ստացած է, 1934 հոկտեմբեր 17 թուականով եւ 531 թուահամար.—

«Ի պատասխան ձեր նամակին, Խ. Ս. Հ. Մ. Փարիզի ընդհ. հիւպատոսարանը պատիւ ունի ձեզի տեղեկացնելու որ յիշուած հայ բանուորները կրնան դիմում կատարել խորհրդային հպատակութեան համար: Ասոր համար, պէտք է լեցնեն այն հարցարաններ (երեք հատ՝ 18 տարին լրացուցած իւրաքանչիւր անձի համար) զորս ընդհ. հիւպատոսարանը իրենց պիտի ղրկէ փոխան 160 Փր. հիւպատոսական ծախքի՝ իւրաքանչիւր անձի համար: Հիւպատոսական ծախքերը ետ չեն տրուիր, ինչ որ ալ ըլլայ դիմումին արդիւնքը: Ընդհ. հիւպատոսարանը իր կողմէ պարտք կը սեպէ ազդարարել թէ շատ քիչ յոյս կայ որ ընդունուին իրենց դիմումները:

Ստորագր. (անընթեռնելի)

Այս մասին դիմում կատարուած էր նաեւ աշխատանքի նախարարութեան, որ կը պատասխանէր այսպէս.—

«Այս օտար բանուորները որ կ'ուզեն իրենց երկիրը վերադառնալ, կրնան ձրի փոխադրուիլ մինչեւ Ֆրանսական սահմանը, պայմանաւ որ ապացուցանեն թէ ի վիճակի են իրենց ճամբան շարունակելու մինչեւ Նպատակակէտը»:

Ահա թէ ինչ կը հրամցնեն այս գծրախոններուն զորս կ'ուզեն Ֆրանսայէն դուրս նետել, ուր եկած են աշխատելու գործատէրերու պահանջին վրայ եւ օտար բանուորներու վարչութեան հաւանութեամբ: Հայերու կացութիւնը մասնաւորապէս դժուարին է, որովհետեւ, համաձայն ռուսական հիւպատոսարանի նամակին, այս բանուորները չեն կրնար իրենց երկիրը դառնալ եթէ խորհրդային հպատակ չեն եւ նախապէս լուր կը տրուի թէ պէտք չէ յոյս ունենան այդ մասին»:

»»»..«««

ՆՈՐԷՆ ՍՈՒՏ ԼՈՒՐԵՐ տարածուած ըլլալով դաշինքի անհամաձայնութեան եւ մասնաւորապէս դատական նախարար Պ. Փէռնոյի մասին, վարչապետութեան դիւանը դեկոյց մը հրատարակեց, հերքելու համար այդ զրոյցները.

## Ն ՈՒ Ա Գ Ա Հ Ա Ն Դ Է Ս

ԴԱՇՆԱԿԱՀԱՐՈՒՀԻ

# ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆԻ

1 ԴԵԿՏԵՄԲԵՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ԻՆ

**Maison Pleyel, Salle Chopin**ի մէջ

**8, Rue Daru. Métro: Ternes**

Յայտագրին մէջ ՊԱԽ, ՍՔԱՐԼԱԹԻ, ՇՈՒՄԱՆ, ՇՈՓԷՆ, ԼԻՍԹ եւ հայ հեղինակներէն ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ, ԺՈՐԺ ՍԻՆԱՆԵԱՆ եւ ՕՐ. ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆի գործերը:

ՏՈՄՍԵՐՈՒ ԳԻՆԵՐԸ. 20, 15, 10 եւ 5 ՖՐԱՆՔ

ԴԻՄԵԼ.— Maison Pleyel, 252, Fbg. St. Honoré, Հրանտ – Սամուէլի գրատունը, 51, Rue Monsieur le Prince եւ հայ թերթերու խմբագրատունները:



Յր. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին «Ֆլօրիա» ճաշարանին մէջ՝ կարեւոր օրակարգ:

Կը հրաւիրուին համակիրները





## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

Փարիզ

### Դ Ա Ս Ա Խ Օ Ս Ո Ւ Թ Ի Ւ Ն

ՓԱՐԻԶԻ եւ շրջանի քոյր կոմիտէներու ընկերահամակրական ընդհ. դասախօսութիւնը տեղի կ'ունենայ այսօր կիրակի, կէսօրէ վերջ, ժամը 2.30ին, Société Savantesի D սրահին մէջ, 8, Rue Danton. Մէթրօ Odéon կամ St. Michel:

Կը խօսին ընկերներ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ եւ ՍԻՄՈՆ ՎՐԱՑԵԱՆ

«ՌՈՒՍԵԻԹՈՒՐՔ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՔՍԱՆԱՄԵԱՅ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՒ»











## FILMS RECOMMANDÉS

ՓԱԹԷ ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ

ՇԱԲԱԹ ՆՈՅ. 23—29

- MARIGNAN. Les nuits Moscovites (Harry Baur, Annabella)
- MARIVAUX. Tartarin de Tarascon (Raimu)
- MOULIN ROUGE. Un homme en or (Harry Baur)
- IMPERIAL. Si j'étais le patron (F. Gravey, Max Dearly)
- OMNIA CINE INFORMATION. Actualités mondiales — Manoir de la forêt vierge
- VICTOR HUGO. L'Imperatrice rouge (vers. orig. s. t. f.)
- ROYAL. Rythmes d'amour — Princesse par interim
- BARBES. Tu sera star — Rémo, démon de la jungle
- BELLEVILLE. Rothchild (Harry Baur) — Marie Rose, Rose Marie
- CAPITOLE. La dactylo se marie — Malacca
- DEMOURS. Le prince de minuit — Malacca
- EXCELSIOR. La dactylo se marie — Malacca
- FEERIQUE. Amok — La garnison amoureuse
- LECOURBE. Amok — Les surprises du sleeping
- LOUXOR. La dactylo se marie — Malacca
- LUTETIA. Imperatrice rouge (Marlène Diétrich)
- LYON. La dactylo se marie — Malacca
- MAGIQUE. Rothchild (Harry Baur) — Vienne 1934
- MAINE. Amok — La garnison amoureuse
- METROPOLE. La dactylo se marie — Malacca
- MONTPARNASSE. Si j'étais le patron — Malacca
- MOZART. Si j'étais le patron — Les Malabares
- PALAIS DES GLACES. Amok — Tout pour l'amour
- PATHE ORLEANS. Amok — Sur scène: Huard et son orchestre
- RECAMIER. Amok — La jeune fille d'une nuit
- ROCHECHOUART. La dactylo se marie — Malacca
- SAINT CHARLES. Amok — La garnison amoureuse
- SAINT MARCEL. Si j'étais le patron — Obsession — Sur scène: Les ballets Golden
- SELECT. Si j'étais le patron — Les Malabares

BANLIEUE

- ALHAMBRA D'ASNIERES. Le dernier milliardaire — J'étais une espionne
- CASINO DE CLICHY. L'or — Paris Music — Hall
- COLOMBES. La dactylo se marie — Malacca
- KURSAAL AUBERVILLIERS. Tu sera star — Suzanne c'est moi
- KURSAAL BOULOGNE. L'or — Quatre à Troyes
- OLYMPIA DE CLICHY. La dactylo se marie — Malacca
- PATHE CINEMA PALACE (Boulogne). La dactylo se marie — Malacca









Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17 Rue Damesme PARIS (13e)

ընդունելութեանց հրաւիրուած է Գ. Նուպար Կիւլպէնկեան, որդին ծանօթ մեծահարուստին:

❊ Երեքշաբթի օր «հարսնիքի փորձ» մը կատարուեցաւ Թափօրին ճամբուն վրայ եւ Ուէսթմինիսթրի աբբայարանին մէջ, ուր պիտի կատարուի պըսակի արարողութիւնը: Բոլոր մանրամասնութիւնները կէտ առ կէտ փորձի ենթարկուեցան:

## ԻՏԱԼԻԱ Ի՛ՆՉՈՒ ԿԸ ՄԵՐԺԷ ՅԱՆՁՆԵԼ ԵՐԿՈՒ ԽՐՈՒԱԹ ԿԱԼԱՆԱՒՈՐՆԵՐԸ

### ԴԱՏԱԿԱՆ ԱՏԵԱՆԻՆ ՎՃՌԱԳԻՐԸ

Ահաւասիկ այն դատական վճռագիրը որով կը մերժուի Ֆրանսայի յանձնել երկու խրուաթ ամբաստանեալները, Տոքթ. Փավէլիչ եւ Քվաթէրնիք —

Նկատելով որ յանցաւորները յանձնելու ձեւակերպութիւնը կանոնագրուած է Իտալիոյ պատժական օրէնքով, միջազգային պայմանագրութիւններով եւ սովորութիւններով,

Նկատելով որ 1870 մայիս 12ին իտալական պետութեան եւ ֆրանսական պետութեան միջեւ կնքուած յանձնումի դաշնագրին Բ. եւ Գ. յօդուածները չեն բարեփոխուած կամ ջնջուած յետագայ դաշնագիրներով, ոչ ալ Իտալիոյ պատժական օրէնքով եւ միջազգային սովորութիւններով, եւ հետեւաբար պէտք է գործադրուին ներկայ պարագային մէջ,

Նկատելով որ վերոյիշեալ դաշնագիրը, իր Բ. յօդուածին մէջ սահմանաւորելէ վերջ այն յանցանքները որոնց համար ընդունուած է յանձնումը երկու պետութեանց միջեւ, Գ. յօդուածին մէջ դուրս կը ձգէ քաղաքական յանցանքները (քաղաքական ոճիրները եւ յանցանքները),

Նկատելով որ Եուկոսլավիոյ Աղեքսանդր Թագաւորին սպանութիւնը (կատարուած՝ Մարսէյլի մէջ, 1934 Հոկտ. 9ին), քաղաքական պատճառներէ դրդուած է եւ եուկոսլաւ պետութեան քաղաքական շահուն վնասած ըլլալով, քաղաքական յանցանք մը կը կազմէ համաձայն Իտալիոյ պատժական օրինագրքի 8րդ յօդուածին Բ. հատուածին,

Նկատելով որ, նոյն շարժառիթով, քաղաքական է Ֆրանսայի արտաքին նախարար Գ. Պարթուի սպանութեան յանցանքը,

Նկատելով որ, համաձայն վերոյիշեալ 8րդ յօդուածի (վերջին մաս) նոյնպէս քաղաքական կը համարուի միեւնոյն առիթով Զօր. Ժոռժի եւ միւս բոլոր զոհերուն ի վնաս կատարուած կամ փորձուած յանցանքները,

Նկատելով որ, հետեւաբար, կարելի չէ արտօնել յանձնումը,

Համաձայն պատժական օրինագրքի (կը յիշէ յօդուածները) եւ 1870 մայիս 12ի դաշնագրի տրամադրութեանց, Անթէ Փավէլիչի եւ Էօժէն Քվաթէրնիքի յանձնումը պէտք չէ ընդունիլ:

---

ՇՌՆԴԱԼԻՑ ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ ՄԸ տակն ու վրայ ըրաւ գաղտնի ոստիկան Պոնիի դատավարութիւնը, առջի օրուան նիստին մէջ: Աղջիկ մը, Օր. Քոթիյոն, դատարան ներկայանալով, պատմեց թէ խումբ մը մարդիկ Պոնիի մեղսակցութեամբ երեք միլիոն ֆրանք շորթած են իրմէ, եւ վերադարձնելու համար մօրը մերկ լուսանկար մը, զոր քաշած էր 15 տարեկան եղած ատեն: Պոնի կատղելով պոռաց վկային երեսին.— «Ստախօս, ո՞վ վճարեց քեզի այդ սուտը գլորելու համար»: Աղջիկը պնդեց, եւ նախագահը որոշեց այս մեղադրանքն ալ արձանագրել:

ՊԵՐԼԻՆԻ անգլ. դեսպանը առջի օր երկար տեսակցութիւն մը ունենալով Գ. Հիթլէրի հետ, պարզեց իր կառավարութեան տեսակէտները՝ Գերմանիոյ վերազինման մասին: Պաշտօնական շրջանակներու մէջ մեծ կարեւորութիւն կու տան այս խօսակցութեան, մանաւանդ որ Անգլիոյ Երեսփ. Ժողովն ալ երէկ զբաղեցաւ այս հարցով:

ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ վարիչ մարմինը երկար պատասխան մը գրեց համայնավար կուսակցութեան, միացեալ գործունէութեան եւ երկու կազմակերպութեանց միացման մասին: Յօժարութեամբ ընդունելով երկու առաջարկներն ալ, կուսակցութիւնը միացման համար բանակցութեանց հիմ կը ներկայացնէ 1905ի միութեան դաշինքը: (Մանրամասնութիւնները յառաջիկային):

ՎԱՐՉԱՊԵՏ Գ. ՖԼԱՆՏԷՆ երկար ճառ մը խօսեցաւ ձայնարձակին առջեւ, իր տնտեսական քաղաքականութեան մասին, առեւտրական եւ ճարտարարուեստական խմբակցութեանց հացկերոյթին առթիւ: Շեշտեց միութեան եւ վստահութեան անհրաժեշտութիւնը, մեղմացնելու համար տագնապը:

5000 ՇԱՐԺԱՎԱՐՆԵՐ (շօֆէօր) ժողով գումարելով, որոշեցին գործադրել ոստիկանութեան նոր հրահանգը, որ օրական աշխատանքը կը սահմանէ 12 ժամ: Ուրիշներ հակառակ ըլլալով այս որոշման, գործադուլ ծագեցաւ:

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

### Փարիզ

ՓԱՐԻԶԻ «Հրազդան», «Քրիստափոր», եւ «Աղբիւր — Սերոբ» միացեալ խումբերու դասախօսութիւնը, տեղի կ'ունենայ այս երկուշաբթի, (3 դեկտեմբեր), ժամը 8.30ին, 32, Ave. des Gobelins սրճարանի վերնայարկը:

Կը խօսի՝ ԸՆԿ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

Նիւթ՝ Պատերազմի վտանգը եւ ուժերու դասաւորումը Եւրոպայի մէջ»:

Ներկայ կրնան ըլլալ Փարիզի եւ շրջանի բոլոր ընկերները:

ԱՆԻԷՌ-ԳՈՒԱ-ՔՈԼՈՄԲԻ ենթակոմիտէի ընկերական ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 9ին 108, rue Bourguignons Անիէռ (անկիւնի սրճարանը):

### Գաւառ

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէի ընկերական ժողովը, 30 նոյեմբեր Ուրբաթ իրիկուն, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին:

Հ. Յ. Դ. Վիէնի կոմիտէն ընկերական ժողովի կը հրաւիրէ «Քրիստափոր» խումբի բոլոր ընկերները, 1 դեկտ.ին շաբաթ, իրիկուան ժամը 7.30ին «Ամաժակ» Ակումբին մէջ:

Կարեւոր օրակարգ. կը խնդրուի ներկայ ըլլալ ճիշդ ժամանակին:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՖՐ. Հ. Կ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի պարգեւաբաշխութեան հանդէսը տեղի պիտի ունենայ այս Կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին, Ակումբի սրահին մէջ:

Մուտքը՝ ազատ է:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղի ժողովը, 1 դեկտ., շաբաթ իրիկուն, ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

### ՊԱՐԱՆՑԻԿ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կ. Խաչի Առնուվիլի մասնաճիւղին Պարանցիկ թէյասեղանը, 2 դեկտեմբեր, Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3 — 8, Salle Galmansի սրահին մէջ:

Մուտք՝ 5 ֆրանք, անդամներու եւ կիներու համար 3 ֆրանք:











ՑՈՐԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութիւնը պիտի տօնէ իր կազմութեան քսանեւհինգամեայ յոբելեանը, Սեւրի Մուրատեան վարժարանի Պէշիկթաշլեան սրահին մէջ, 23 Դեկտեմբեր, Կիրակի օր:

Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

Մանրամասնութիւնները մօտ օրէն:



Ուշադրութիւն

ՀԱՅ մսավաճառ մը զանազան պատճառներով կը ծախէ իր խանութը, որ ունի նաեւ մէկ սենեակ: Դիմել՝ ՄԱՆՈՒԿ ՍԱՀԱԿԵԱՆԻ. 32, Avenue Jean Massé, Lyon-Vaise. (Rhône)

















Le Gérant: H. STEPHAN

... A. DER AGOPIAN 17 Rue Damesme PARIS 13e

